թալ, Նախագահ տը Կօլի արտօնութեամբ, բայց այդ ճամբորդութիւնը կրնայ ըլլալ այն ատեն միայն՝ երբ կռիւները դադրին :

Միւս կողմէ, Փարիզի մէջ կարեւոր խօսակցութիւններ տեղի ունեցան Քանատայի Արտաքին նախարար Հովըրտ Կրինի հետ :

Քանատայի նախարարը մօտ մէկ ժամ խորհրդակցեցաւ Ֆրանսացի իր պաշտօնակիցին հետ, միջազգային հրատապ հարցերու շուրջ: Արտաքին երկու նախարարները քննեցին մասնաւորապէս ֆրանքօ-քանատեան յարաբերութիւնները, Ատլանտեան Ուխտի, Արեւելք – Արեւմուտք եւ յատկապէս Մեծերու ժողովին ու զինաթափութեան հարցերը :

Նախագահ տը Կօլի կողմէ ընդունուելէ ետք, Հովըրտ Կրին այցելեց Վարչապետ Տըպրէի, որուն հետ խօսակցեցաւ աւելի քան կէս ժամ :

Քանատայի Արտաքին նախարարը յայտարարեց թէ եկած է Եւրոպայի եւ Միջին Արեւելքի քանատական դեսպաններուն հետ կարեւոր խօսակցութիւններ ունենալու համար. բայց ատկէ, Ֆրանսայի եւ Քանատայի միջեւ կատարեալ համաձայնութիւն կը տիրէ, ըսաւ ան.— Այսօր առիթը ունեցայ տեսնուելու Նախագահ տը Կօլի, Վարչապետ Տըպրէի եւ Արտաքին նախարար Քուվ տը Միւրվիլի հետ: Բարեկամական խօսակցութիւններ ունեցանք, որոնք օգտակար եղան մեզի համար :

Հովըրտ Կրին աւելցուց նաեւ, թէ «երբ Ֆրանսա կուգայ՝ ինքզինք կը զգայ իր երկրին մէջ եւ ունեցած խօսակցութիւնները ոչ միայն բարեկամական, այլ եղբայրական են»: 1919էն ի վեր առաջին անգամն էր որ Ֆրանսա կուգար եւ մեծապէս տպաւորուեցաւ Ֆրանսայի յառաջդիմութեամբ :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր բաժանորդներուն կը ղրկենք չէք-փօսթալներ, իրենց հաշիւներով, դիւրացնելու եւ կանոնաւորելու համար իրենց հաշիւները: Հետզհետէ պիտի ստիպուինք դադրեցնել այն բաժանորդներուն թերթերը որոնք չեն պատասխաներ մեր դիմումին :

Հաճելի չէ մեզի համար միշտ յիշեցնել մեր բաժանորդներուն որ պարտաճանաչ ըլլան եւ նոր դժուարութիւններ չստեղծեն իրենց ապառիկ եւ անկանոն վճարումներուն :

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Դուիթեան ընտանիքը կը նուիրէ 5000 ֆրանք, Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օգափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Տիրան Սէֆէրեանի մահուան առթիւ :

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

# ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

## ԵՒ

## ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Սէն Շամոնի «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Նոր Սերունդ «Վարդգէս» խումբին: Նոյեմբեր 7ին, Շաբաթ իրիկուն, ժամը 8·30ին, Սալ տէ Ֆէթի մէջ:

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն կը մասնակցի Նոր Սերունդի խումբը, ղեկավարութեամբ Նոր Սերնդական Պ. Գուլաքսզեանի:

Կ'երգէ Փարիզէն յատկապէս հրաւիրուած Պ. ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ :

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ՍԱԹԵՆԻԿ ՏԷՄԻՐՃԵԱՆԻ :

Նուագ եւ արտասանութիւն :

Ճոխ պիւֆէ :

Մուտքը 200 ֆրանք :

×

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Պիտի տօնուի Նոյեմբեր 7ին, Շաբաթ իրիկուն մինչեւ լոյս, Ալհամպրայի սրահը, Մարսէյլ :

Կը նախագահէ ընկեր ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ
Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

×

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Պիտի տօնուի 8 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ ետք ժամը 15·30ին, Մուլէն – Պլէօի սրահը (Սընօն) :

Կը նախագահէ ընկ. Կ. ՏՕՆԷՐԵԱՆ
Կը բանախօսէ ընկ. Մ. ՄԻՐԶԷ
Խմբերգ, արտասանութիւն, երգ եւ նուագ :

×

### ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ ՄԷՋ

Նոյմեբեր 8ին :

## Հ.Յ.Դ. "ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՕՐԸ"

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Լիոնի «Սիամանթօ» խումբին կողմէ :

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէի :

Այս Շաբաթ, երեկոյեան ժամը ճիշդ 20·30ին, Երդ. Թաղապետարանի սրահը, 58 Րիւ տը Սէզ :

Օրուան խօսնակ ընկեր ՎԱՐՈՒԺԱՆ ՍԱՐԳԻՍԵԱՆ :

Գեղարուեստական ճոխ եւ խնամուած բաժին, մասնակցութեամբ Փարիզէն յատկապէս հրաւիրուած եւ սիրուած արուեստագէտներու :

Ծանօթ երգիչ Մկրտիչ Պօղոսեան նոր երգերու շարքով մը, դաշնակի ընկերակցութեամբ ծանօթ խմբավար Կարպիս Աբփիկեանի, պարսկահայ յայտնի պարուհի Օր. Հերմինէ Դանիէլեան իր հայ դեղջկական պարերով :

Տեղւոյս Նոր Սերունդին կողմէ խիստ ծիծաղաշարժ պաւեստ մը՝
«ՇՈՒԱՐԱԾ ԲԺԻՇԿԸ»

Նուագ, երգ, արտասանութիւն եւն. :
Մուտքը ազատ է :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

# ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Շաւիլի մասնաճիւղի անդամական ընդհ. ժողովը Նոյեմբեր 2ի երկուշաբթի օրը ժամը 3ին, գպրոցի սրահը: Ներկայ կ'ըլլայ Կեդր. Վարչութեան ներկայացուցիչը: Այս ժողովին պիտի քաշուի Շաւիլի բոլոր ընկերուհիներու խմբանկարը, Ամերիկայի Հ. Օգն. Խաչի յիսնամեակին առթիւ հրատարակուելիք բացառիկ թերթին մէջ դրուելու համար: Կը խնդրուի բոլոր ընկերուհիներէն անպատճառ ներկայ գտնուիլ այս ժողովին եւ միասին բերել իրենց անդամատետրերը :

Ֆ. ԿԱՊ. Խաչի Մարսէյլի Շրջ. վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ շրջանիս բոլոր մասնաճիւղերը, Նոյեմբեր 5, կէսօրէ վերջ ժամը 4ին, Քաֆէ Նօայի սրահը: Կը խնդրուի բոլոր վարչութիւններէն ճշդապահ ըլլալ : Կարեւոր օրակարգ :

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴ. Հայր. Միութեան Սէնթ Անթուանի մասնաճիւղի ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, հայրենակից Նաճարեանի ագարակը : Բոլոր անդամներու ներկայութիւնը կարեւոր է :

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Շաւարշ Միսաքեան» խումբի ընկերական ընդհ. ժողովը 4 Նոյեմբեր, ժամը 20·45ին «Ահարոնեան» ակումբը: Կարեւոր օրակարգ : Բացականները նկատի կ'առնուին :

## ՅԱՐՄԱՐ ԱՌԻԹ ՄԸ

Կը փնտռուի երիտասարդ արհեստաւոր կօշկակար մը, նախընտրաբար ամուսնացած, հրապարակի վրայ գտնուող կօշկակարի խանութի մը համար: Ժէրանս լիպրը կամ ընկերութիւն եթէ տրամադրելի պզտիկ դրամագլուխ մը ունի: Կայ նաեւ ազատ յարկաբաժին մը : Կարելի է նաեւ գաւառէն դիմել քանի որ տուն կայ :

Գրել կամ դիմել.—

CHEREKDJIAN
20, Ave de la Porte St Ouen, Paris 18e
PYR. 71-98

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Մեր բաժանորդներուն կը ղրկենք չէք-փօսթալներ, իրենց հաշիւներով, դիւրացնելու եւ կանոնաւորելու համար իրենց հաշիւները: Հետզհետէ պիտի ստիպուինք դադրեցնել այն բաժանորդներուն թերթերը որոնք չեն պատասխաներ մեր դիմումին:*

*Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան:*

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

### *ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

Հայ Կարմիր խաչի տարեկան ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, 24 ՅՈՒՆՈՒԱՐ, 1960:

### *ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅԵՐԸ «ՆՈԹՐԸ – ՏԱՄ ՏԸ ԼԱ ԿԱՐՏ»Ի ՍՐԲԱՎԱՅՐԸ*

*27րդ Ուխտագնացութիւնը Մարսէյլի հայ գաղութին դէպի «Նոթրը - Տամ տը լա Կարտ»ի Սրբավայրը, այս Կիրակի օր:*

*Այս Ուխտագնացութեան արբազան արարողութիւնը պիտի կատարուի նոյն Սրբավայրին մեծաւորը՝ Գերապայծառ Յովհաննէս Մէրէնսի նախագահութեամբ, որ պիտի ներկայացնէ նաեւ գերապայծառ Տէր Մարկոս Լալիէ Արք.ը*

*Ժամը 9ին հայ հաւատացեալներ պիտի հաւաքուին Սրբավայրին մէջ ու ժամը 9·30ին հանդիսաւոր ծայնաւոր պատարագ պիտի մատուցանէ ու պիտի քարոզէ Յովհաննէս Ծ. Վ. Զուխաճեան, ժողովրդապետ Պիւշ տիւ Ռօնի ու Վառի նահանգներու հայ կաթողիկէ հաւատացեալներուն:*

*Յաւարտ պատարագի հանդիսաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի վերջին երկու պատերազմներու ընթացքին ինկած համայն նահատակներուն համար:*

*Մեծապէս բաղձալի է որ Մարսէյլի հայ ժողովուրդը ներկայ գտնուի սոյն հանդիսաւոր օրուան առիթով կատարուելիք եկեղեցական արարողութիւններուն:*

### ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

*11 Նոյեմբեր, Չորեքշաբթի առաւօտ պատարագ պիտի մատուցուի Ռիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ: Պիտի պատարագէ Տէր Թորգոմ քհնյ., Լիոնէն:*

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

*Մեթրօ Փորթ Մայօ*

*Պաշտամունք այսկիրակի առաւօտ ժամը 10·45ին:*

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱ՝ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱ 3Լ

*Պաշտամունք՝ այս կիրակի, ժէ-րոմ, ժամը 9,30ին: Ռիւ Ժէմափ ժամ 10,45ին:*

*Կը քարոզէ* Վերապատուելի Հելվաճեան

### ՆՈՒԷՐՆԵՐ

*Մնաւլոցի առթիւ Տէր եւ Տիկին Յ. Խաչմանեան հինգ հազար ֆրանք կը նուիրեն Ազգասախնամին, երեք հազար Ֆր. Ծ. Միսաքեան սրահին: (Ստանալ «Յառաջ»էն):*

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

*Պ. Յակոբ Պասմաճեան կը նուիրէ 2500 ֆրանք, Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օգնութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Եդուարդ Եազըճեանի մահուան առթիւ:*

### *ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԺՈՂՈՎՆԵՐ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ*

*Նոյեմբեր 9, Երկուշաբթի օրուընէ ըսկըսեալ մինչեւ Նոյեմբեր 15, ամէն իրիկուն ժամը 8·30ին, հրապարակային ժողովներ տեղի պիտի ունենան, 20 Րիւ Ժէմաքի սրահին մէջ: Պիտի խօսի Աւետարանիչ ՔՈԼԷ: Մուտքը ազատ է:*

*Կիրակի, Նոյեմբեր 15, ժամը 3ին,* Երիտասարդաց Համախմբում *նոյն սրահին մէջ:*





Imprimerie Spéciale
du Journal « Haratch »



### *ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ*

*Բարձր Հայքի Հայր. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները ամսոյս 11ին ժամը 2·30ին, Բարեգործականի սրահը, 19պիս, Րիւ Վանթիւռ:*

*ՕՐԱԿԱՐԳ.— Ա) Զեկուցում վարչութեան, Բ) Ընթացիկ կարեւոր հարցեր, Գ) Վարչութեան ընտրութիւն:*

*Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն որ բարի ըլլան ներկայ ըլլալ սոյն ժողովին:*

## —ՑՈՒՑԱՏԵՏՐ—

*ԿԱՊ. ԽԱՉԻ Պոմոնի մասնաճիւղի վարչութիւնը տարեկան ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամուհիները, Սահակ Մեսրոպ դպրոցին մէջ: Այս Երկուշաբթի օր, կէսօրէ վերջ ժամը ճիշդ 3ին: Տարեկան տեղեկատուութիւն: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:*

ծեմ թէ Նախագահ տը Կոլի ալժերիական քաղաքականութիւնը հասկցուած եւ գընահատուած է Մեծն Բրիտանիոյ մէջ :

Կարգ մը գրոյցներու համաձայն, Անգլիոյ Արտաքին նախարարը Փարիզ կուգայ՝ Վարչապետ Մաքմիլընի այցելութիւնը պատրաստելու համար : Ինչպէս լոյս կը չնչուէ իր յայտարարութեան մէջ՝ Անգլիոյ եւ Ֆրանսայի միջեւ վըստահութիւնը պէտք է վերահաստատուի · Մաքմիլըն հաւանաբար Փարիզ գայ նոյն մտահոգութեամբ քանի որ Լոնտոնի մէջ կը մտածեն թէ Ֆրանսայի Հանրապետութեան Նախագահը նախկին վստահութիւնը չունի Անգլիոյ Վարչապետին հանդէպ :

---

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ ՉԻՆԱՍՏԱՆ առջի օր դարձեալ կրակ բացաւ Քեմոյ կղզիին վըրայ · մօտ երեսուն ռումբեր արձակուած են քանի մը ժամուան ընթացքին :

ՄԱՐՈՔԻ Թագաւորին կրտսեր տղան՝ իշխան Մուլէյ Ապտալլահ Պէյրութ կը հասնի այսօր ուր պիտի նշանուի Լամիա Սոլհի հետ որ աղջիկն է Լիբանանի նախկին վարչապետ՝ Ռիատ Սոլհի :

ԱՆԳԼԻԱ համաձայնեցաւ հրաժարիլ Կիպրոսի զինուորական իր խարիսխներուն մօտ գտնուող գիւղերը իր գերիշխանութեան ներքեւ պահելու ծրագրէն · երբ կղզին անկախութիւն ստանայ 1960 Փետրուարին, Անգլիա պիտի ունենայ միայն պատերազմական իր խարիսխները :

ՊՈՆԻ ամերիկեան նոր դեսպան նշանակուեցաւ Ուոլթըր Տաւլինկ :

ՄԱՆՋՈՒՐԻՈՅ մէջ, խորհրդային սահմանին մօտ, ըմբոստութիւններ ծագած են, որոնց ընթացքին համայնավար բազմաթիւ պաշտօնատարներ սպաննուած են, կը հաղորդէ Ազգ · Չինաստանի տեղեկատուութեան գործակալութիւնը :

ՀԻՄԱԼԱՅԱՅԻ վրայ կորսուած է ճափոնական 32 հոգինոց արշաւախումբ մը, որմէ երեք շաբաթէ ի վեր լուր չկայ :

ԹԵՔՍԱՍԻ մէջ (Ամերիկա) 12·527 թոննոց նաւթատար նաւ մը կրակ առաւ առջի օր · 300·000 լիտր օդանաւի հրանիւթ կար իր ամբարներուն մէջ : Բոցերը երեսուն մեթր բարձրացան, նաւաստիներէն շատեր ածխացան · քանի մը հոգիներ միայն յաջողած են ծովերբ հասնիլ : Նաւահանգիստի շրջակայ բնակչութիւնը պարպուած է : 1947ին նման աղէտ մը 561 հոգիի մահուան պատճառ դարձած էր :

ՖՈՐՄՈԶԱՅԻ մէջ ջախջախուած է ամերիկեան զինուորական օդանաւ մը · 11 ճամբորդներ եւ չորս օդաչուները մեռած են :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր բաժանորդներուն կը ղրկենք չէքփօսթալներ, իրենց հաշիւներով, դիւրացնելու եւ կանոնաւորելու համար իրենց հաշիւները : Հետզհետէ պիտի ստիպուինք դադրեցնել այն բաժանորդներունթերթերը որոնք չեն պատասխաներ մեր դիմումին :

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



## Հ. Մ. Ը. Մ.

Մարսէյլի Հ · Մ · Ը · Միութեան եղանակի պարահանդէսը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 5ին, Շաբաթ երեկոյ, Սալոն տը լ'Ալհամպրայի մէջ : Կազմակերպութիւններէ կը խնդրուի նկատի առնել սոյն թուականը :

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ · Յ · Դ · Նոր Սերունդի Անիէռ – Պուա Քոլոմպի Սօսէ – Սերոբ խումբին կողմէ, այս կիրակի ժամը 15ին, Քլօշէթի սրահը : 149պիս, Ավընիւ տ'Արժանթէօյ :

Ծով յայտագիր, անակնկալներ :

Կը հրաւիրուին ծնողքները :

Մուտքը ազատ է :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Մարիամ Համբարեան, Յովհ · Համբարեան, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝

ՀԱՄԲԱՐ ՀԱՄԲԱՐԵԱՆԻ

(Սէօլէզցի)

մահուան առթիւ : –

×

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ շինութեան.— Տիկին Կուրտիկեան 5 հազար ֆրանք, Պ · Գալուստ Կատայեան երեք հազար, Տիկին Վերգին Զաֆրանեան հազար : Միշտ նոյն առատաձեռն բարերարը որ կ'ուզէ մնալ Ոմն չորս հազար ֆրանք, Ալֆորվիլէն Տիկին Արշալոյս Գէորգեան հինգ հազար ֆրանք :

## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգն · Մարմնին կողմէ :

· ՆՈՅԵՄԲԵՐ 29ԻՆ, ԺԱՄԸ 17ԷՆ 24

GRAND HOTEL

Սեղանները ապահովել հեռաձայնելով՝

WAG. 38-54

## ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

11 Նոյեմբեր, Չորեքշաբթի առաւօտ պատարագ պիտի մատուցուի Ռիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ : Պիտի պատարագէ Տէր Թորգոմ քհնյ · , Լիոնէն :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ · Բ · Ը · ՄԻՈՒԹԵԱՆ

ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, 21 Փետրուար 1960ին, Ժորժ Ե · ի պանդոկին սրահներուն մէջ, ժամը 17էն մինչեւ կէս գիշեր :

×

19 Դեկտեմբեր, Շաբաթ գիշեր Ամավերջի պարահանդէս, կազմակերպուած Հ · Բ · Ը · Միութեան Մարսէյլի Հայուհեաց մասնախումբին, տեղական մասնաժողովին եւ երիտասարդաց կողմէ :



## ԸՆԴՀ · ԺՈՂՈՎ

Բարձր Հայքի Հայր · Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ · ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները ամսոյս 11ին ժամը 2·30ին, Բարեգործականի սրահը, 19պիս, Րիւ Վանթիւռ :

ՕՐԱԿԱՐԳ .— Ա) Զեկուցում վարչութեան, Բ) Ընթացիկ կարեւոր հարցեր, Գ) Վարչութեան ընտրութիւն :

Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն որ բարի ըլլան ներկայ ըլլալ սոյն ժողովին :

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հայ Կարմիր խաչի տարեկան ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, 24 ՅՈՒՆՈՒԱՐ, 1960 :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

Թիպէթի մէջ համայնավարները որոշած են գիւղացիներու բաժնել մեծահարուստներու եւ լամաներու պատկանող հողերը :

ԱՄԵՐԻԿԱՅԻ փոխ նախագահ Նիքսըն յայտարարեց թէ Միացեալ Նահանգները այլեւս չեն կրնար շարունակել իրենց օգնութիւնը՝ օտար երկիրներու .— Պէտք է այլեւս հասկցնենք եւրոպացի մեր դաշնակիցներուն, ըսաւ ան, թէ իրենք ալ պէտք է մասնակցին այդ օգնութեան եւ առաջին առիթով ամերիկեան ապրանքներու վրայ դրուած մաքսատուրքերը թեթեւցնեն :

ՆԱԽԱԳԱՀ ԱՅԶԸՆՀԱՈՒԸՐԻ համար արտասովոր նուէր մը կը պատրաստէ Խ. Միութիւնը : Մոսկուայի ձայնասփիւռը կը հաղորդէ թէ հայ արուեստագէտ մը պատրաստելու վրայ է արժէքաւոր մանրագիր նուէր մը, որ նախագահ Այզընհաուըրի պիտի տրուի երբ ան յառաջիկային Խորհրդային Միութիւնը այցելէ :

Ամենափոքր չափերով եւ վարդագոյն մարմարէ աշտարակ մըն է, ծայրը գոհարազարդ երկրագունդով մը : Գնդիկին մէջ կայ բրինձի հատիկ մը որուն վրայ գծուած պիտի ըլլան Կրեմլինը, Նիւ Եորքի մուտքին բարձրացող Ազատութեան արձանը, Ամերիկայի եւ Ռուսաստանի աշխարհագրական քարտէսները : Այս մանրագիր գծագրութեան ամբողջութիւնը անտեսանելի է առանց մեծադիտող եւ շատ զօրաւոր ոսպնեակի մը օգնութեան : Այդ թանկագին գործը աւարտելու վրայ է հայ մանրանկարիչ – փորագրողի մը կողմէ :

ՎԱՐՉԱՊԵՏ ԽՐՈՒՇՉԵՒ երիտասարդանալու խնամքի կ'ենթարկուի : Նիւ Եորքի օրաթերթ մը այդպէս կը մեկնէ Վարչապետին վերջերս կատարած յանկարծական եւ խորհրդաւոր «արձակուրդը» Ռումանիա, պնդելով թէ միջազգային մամուլին այդ ճամբորդութեան վերագրած քաղաքական զանազան մեկնութիւններէն աւելի վստահ է իր տուած պարզ բացատրութիւնը :

Հունգար բժիշկ մը որ իր երկրին եւ Միացեալ Նահանգներու միջեւ կնքուած մշակութային փոխանակութեանց համաձայնութեամբ այժմ Ամերիկա կը գտնուի, լրագրողին հետ ունեցած փոխասութի մը (ինթերվիու) ընթացքին յայտարարած է թէ՝ Խրուշչեւ տարիներէ ի վեր Ռումանիա կ'այցելէ գաղտնաբար այդ նպատակով :

Ռումանիոյ մայրաքաղաքին ծերացիութեան հաստատութիւնը, անոր պետ եւ երիտասարդանալու նոր խնամք մը գործադրող բժիշկ Աննա Ասլան աշխարհահռչակ համբաւ ունի : Խրուշչեւ հոն կ'երթայ պարբերաբար, նորահնար դեղական միջոցին հետեւելին իսկ ձեռքով եւ անոր անձնական հսկողութեամբ կատարելու երիտասարդացումի խնամքները :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Մեր բաժանորդներուն կը ղրկենք չէֆփօսթալներ, իրենց հաշիւներով, դիւրացնելու եւ կանոնաւորելու համար իրենց հաշիւները : Հետզհետէ պիտի ստիպուինք դադրեցնել այն բաժանորդներուն թերթերը որոնք չեն պատասխաներ մեր դիմումին :

Շնորհակալութիւն մեր բոլոր այն բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ալֆորտվիլի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացաւ Տէր եւ Տիկին Յարութիւն Տապաղեաններէն հինգ հազար ֆրանք Գերասիմ Բալայեանի մահուան առթիւ :

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Ծնողաց Միութեան կազմակերպած տօնածառ – հանդէսը՝ Դեկտեմբեր 20, կիրակի օր ժամը 15էն 22 :




Imprimerie Spéciale
du Journal « Haratch »


## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգն. Մարմնին կողմէ :

ՆՈՅԵՄԲԵՐ 29ԻՆ, ԺԱՄԸ 17ԷՆ 24

GRAND HOTEL

Սեղանները ապահովել հեռաձայնելով՝

WAG. 38-54

## Հ. Մ. Ը. Մ.

Մարսէյլի Հ. Մ. Ը. Միութեան եղանակի պարահանդէսը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 5ին, Շաբաթ երեկոյ, Սալոն տը լ'Ալհամպրայի մէջ : Կազմակերպութիւններէ կը խնդրուի նկատի առնել սոյն թուականը :



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 2.500 | Ֆր. | մինչեւ | 1/4 | սիւնակ | |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 1.500 | Ֆր. | մինչեւ | 1/8 | սիւնակ | |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 1.000 | » | » | » | » | |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 1.500 | » | » | » | » | |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 2.000 | » | » | | » | |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 1.000 | » | » | » | » | |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 1.000 | » | » | » | » | |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ | 500 | » | » | » | » | |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան :

վերադարձնելու համար տրամադրուած զումարները, անդին, Ռուսերը ամբողջ զումարը Թուրքերու տրամադրութեան տակ կը դնեն՝ փոխարէնը առանց որեւէ ապահովութիւն պահանջելու :

Ասկէ զատ, Ռուսերը սկսած են Պոլսոյ մօտերը ապակիի գործարան մը շինել : Միւս կողմէ Թուրք թէքնիսէններ շուտով Խ. Միութիւն պիտի մեկնին՝ մասնագիտանալու համար այս ասպարէզին : Ռուսիա եւ Արեւելեան Գերմանիա անհրաժեշտ մեքենաներով կ'օժտեն նաեւ կերպասեղէնի Թրքական նոր գործարանները :

Անցեալ տարի, բամպակագործներու Թրքական պատուիրակութիւն մը Մոսկուա մեկնած էր, իսկ ռուսական նման պատուիրակութիւն մը այժմ Անգարա կը գտնուի :

Թուրքերը, այս բոլորին մասին հետեւեալ պատճառաբանութիւնը կուտան. —

« Ի՞նչ կրնանք ընել : Կը նախընտրենք Արեւմուտքի հետ գործ ունենալ, բայց պէտք է առաջ մղենք մեր արդիւնաբերութիւնը: Եթէ Արեւմուտք լաւագոյն պայմաններ չառաջարկէ, այս ուրեմն պէտք է դիմենք այլուր, նոյնիսկ եթէ ատիկա անհաճոյ ըլլայ մեզի »:

Գործարանատէր մը կը բացատրէր անցեալները թէ «Ջուրը ինկող մարդը օձին կը փաթթուի, այս առածը լաւագոյն ձեւով կը պատկերացնէ մեր կացութիւնը »:

Իտալացիները չորս միլիոն տոլարի փոխատուութիւն մը պիտի ընեն Թուրքիոյ՝ երկու նոր բամպակագործարաններու կառուցման համար: Գումարը եօթը տարիէն վճարելի է՝ հինգ առ հարիւր տոկոսով: «Լաւագոյն պայմաններն են, որ ստացած ենք արեւմտեան երկրէ մը», կ'ըսէր միեւնոյն գործարանատէրը :

---

ՀՆԴԿԱՍՏԱՆԻ Վարչապետ Նեհրու հետեւեալ երեք պայմանները դրաւ՝ Չու Ան Լէյի հետ տեսնուելու համար. —

1.— Չինացիները պէտք է քաշուին այն հողերէն՝ որոնք Հնդկաստանի կը պատկանին :

2.— Չինացիները պէտք է քաշուին Հիւսիս-Արեւելեան սահմանի վրայ իրենց գրաւած շրջանէն:

3.— Երկու երկիրները զինեալ ուժեր պէտք չէ դրկեն հասարակաց սահմաններու վրայ :

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ մամուլը կը շարունակէ բուռն յարձակումներ գործել Արեւմտեան Գերմանիոյ Վարչապետ Ատենաուըրի վըրայ, ընդունելով թէ գերման Վարչապետին գործունէութիւնը կը ձգտի խափանել մեծերու ժողովը: «Խ. Ռուսիա» թերթը կ'եզրակացնէ թէ պաղ պատերազմի վերջին ներկայացուցիչները կը մնան Ատենաուըր եւ Ամերիկայի նախկին նախագահ Թրումըն :

ՓԱՆԱՄԱՅԻ եւ Միացեալ Նահանգներու միջեւ կարեւոր բանակցութիւններ կը սկսին՝ երկու երկիրներու տարակարծութիւնները հարթելու համար :

ԻՆՏՈՆԵԶԻՈՅ սպայակոյտը հրահանգեց որ Արեւմտեան Ճաւայի մէջ գտնուող չին դիւանագէտները անմիջապէս հեռանան այդ շրջանէն: Չինեւինտոնեզիական տագնապը հետզհետէ աւելի կը սաստկանայ :

---

Տէր եւ Տիկին Յակոբ Վէզիրեան եւ զաւակները, Պ. Ազատօն Վէզիրեան, Պ. Մկրտիչ Վէզիրեան, Տէր եւ Տիկին Հրաչ Կոթողեան, Տէր եւ Տիկին Անդրէ Ֆիշէր եւ զաւակները, Պ. Վահանիկ Կոթողեան, Տէր եւ Տիկին Պերճ Կոթողեան եւ աղջիկը, Տէր եւ Տիկին Միշէլ Լըֆրանսուա եւ զաւակը, Տիկին Վեհանոյշ Թահմազեան (Պէյրութ), Տիկին Վեհանոյշ Աքսարեան (Նիւ Եորք), ինչպէս նաեւ Տէր եւ Տիկին Յակոբ Արզուեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահէ Արզուեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արմենակ Արզուեան եւ զաւակները (Արժանթին), Տէր եւ Տիկին Մարկոսեան (Արժանթին), Կիւլպէնկեան ընտանիքը (Ամերիկա) ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿ. ՓԱՌԱՆՁԵՄ ՎԷԶԻՐԵԱՆԻ

(Ծնեալ Արզուեան)

մահը, որ տեղի ունեցաւ իր բնակարանը, 74 տարեկանին :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երկուշաբթի ժամը 13.45ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Անիէռի հին գերեզմանատունը (Րիւ տիւ Մէնիլ), ժամը 15ին, ամփոփուելու համար ընտանեկան դամբարանը :

Հանգուցեալին փափաքին համաձայն ոչ ծաղիկ, ոչ ծաղկեպսակ :

---



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄԵՔՍԻԿՈՅԻ խորհրդային ցուցահանդէսին բացումը կատարելով Ա. Միկոյեան ճառ մը խօսեցաւ, մասնաւորապէս շեշտելով թէ «մօտ ատենէն Խ. Միութիւնը պիտի գլէ անցնի Ամերիկան՝ արդիւնաբերութեան մարզին մէջ։ Իսկ գալով մշակութային բարգաւաճման, մենք Ամերիկան անցած ենք արդէն եւ անոնք են որ կուգան մեզի՝ տեսնելու համար թէ ինչպէ՞ս կը կազմակերպենք բարձրագոյն կրթութիւնը»։ Այնուհետեւ, Խ. Միութեան փոխ վարչապետը անդրադարձաւ ցուցահանդէսներու կարեւորութեան՝ որպէսզի ժողովուրդները աւելի լաւ ճանչնան զիրար, եւ վերջացուց, ըսելով. — Այս ցուցահանդէսին դուռները միաժամանակ թող բացուին խաղաղութեան եւ ժողովուրդներու ապահովութեան վրայ։

ՄՈՍԿՈՒԱՅԻ մէջ երկու չաբթուան բանակցութիւններէ ետք Միացեալ Նահանգներն ու Խ. Միութիւնը նոր համաձայնութիւն մը կնքեցին՝ 1960 – 1961ի ընթացքին մշակութային փոխանակութիւններ ընելու համար, որոնց մաս կը կազմեն. 1.— Հիւլէական տեղեկութիւններ՝ խաղաղութեան ի նպաստ։ 2.— Ուսանողներու փոխանակութիւն։ 3.— Միացեալ պայքար՝ հիւանդութեանց դէմ։ 4.— Թատերախումբերու եւ ժապաւէններու փոխանակութիւն։

ՊԱՂՏԱՏԷՆ կը հաղորդեն թէ մօտ ատենէն Զոր. Քասըմ հիւանդանոցէն պիտի ելլէ եւ մեծ հանդիսութիւններով պիտի առաջնորդուի իր բնակավայրը։

ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ Նախագահ Թիթօ ճառ մը խօսելով յայտարարեց թէ երկու խմբակցութեանց համաձայնութիւնը պիտի ըլլայ ի վնաս մեկուսի եւ փոքր ազգերու, որոնք իրարու միանալով պէտք է պայքարին մեծերու դէմ։

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ նախագահութեան նախկին թեկնածու Սթիվենսըն յայտարարեց թէ յիսուն տարիէն համայնավար Չինաստան եւ Հնդկաստան արդիւնաբերութեան մարզին մէջ պիտի անցնին Ամերիկան ու Խ. Միութիւնը։

ԱՐԺԱՆԹԻՆԻ մէջ երեւան ելած է փերոնական դաւադրութիւն մը՝ կառավարութեան դէմ։ Ձերբակալուած են բազմաթիւ նախկին սպաներ, որոնք կը պատրաստուէին կառավարութիւնը տապալել. Փերոնականներուն կը գործակցէին համայնավարները։ Խիստ միջոցներ ձեռք առնուած են մինչեւ իսկ բանակին եւ նաւատորմիղին մէջ։

ՊՈՆԷՆ հասած կիսապաշտօնական լուրերու համաձայն՝ հաւանական է որ Արեւմտեաններն Խ. Միութեան առաջարկեն Մեծերու ժողովը գումարել յառաջիկայ Ապրիլ 25ին։

### ՓԱՐԻԶԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Փարիզի եւ շրջակայից Հայց. Առաքելական եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան ներկայացուցչական ժողովը Նոյեմբեր 18ի նիստին մէջ ընտրուած ընտրողական յանձնաժողովը, կը տեղեկացնէ որ մօտիկ ապագային նոր ընտրութիւն պիտի կատարուի։

Ընկերակցութեան անդամներէն անոնք որ չեն վճարած իրենց տարեվճարները, հաճին մինչեւ Դեկտեմբեր 7, 1959, փակել իրենց հաշիւները եւ ստանալ համապատասխան ընկալագիր։

Դիւանն Ընտր. Յանձնաժողովի
(ԿՆԻՔ)

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ
### ԻՍԻԻ ՄԷՋ

Կը տօնուի հացկերոյթով մը, այս կիրակի ժամը 6ին, Խրիմեան ակումբը։ Արձանագրութիւնները փակուած են։

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՆ ՈՒ ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նիսի Գէորգ Զավուշ խումբի եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի։

ՆԻՍԻ մէջ Այս կիրակի, ժամը 15ին։
Կը տօնուի թէյասեղանով մը։
Օթէլ Աֆրիքի շքեղ սրահին մէջ,
20, Ավընիւ Ժէօրժ Քլէմանսօ, Նիս։

Կը նախագահէ ընկ. ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ
Կը խօսի Վ. ՄԻՍԹԻՔ։

Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն Օր. Շաքէ Գաբրիէլեան, դաշնակով՝ Նիսի Քոնսերվաթուարէն Օր. Նիկտա Գասպարեան, երգ, Օր. Սալփի Գէորգեան եւ փոքրիկն Արամ Գէորգեան, արտասանութիւն, նուագ — աքորտէոն՝ Աճօլանեան եղբայրներ։

Թէյասեղանի ծախքերու մասնակցութիւն 500 ֆրանք։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Կեսարիոյ եւ շրջակայքի հայրենակիցներու փափաքին համաձայն, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ, 1895 Նոյեմբեր 18 եւ 1896ի Կեսարիոյ եւ շրջակայքի զոհերուն, 1915ի Կեսարիոյ մէջ կախաղան բարձրացած 53 մարտիրոսներու, ընդհանուր տեղահանութեան նահատակներու, ինչպէս նաեւ բազմավաստակ առաջնորդ Տրդատ Արք. Պալեանի եւ նահատակ խորսով Եպիսկ. Պեհրիկեանի հոգւոյ հանգստեան։

Կը հրաւիրուին Կեսարիոյ եւ շրջանի բոլոր հայրենակիցները, որ փութան եկեղեցի իրենց երկիւղած յարգանքը յայտնելու համար անոնց յիշատակին։

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը ճիշդ 21ին, նոյն հաւաքատեղին։ Շատ կարեւոր օրակարգ։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՎԻԷՆ.— Յ. Կապ. Խաչի վարչութիւնս իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Մարի Թէրզիեաքուրեանի, Պ. Գրիգոր Թէրզիեաքուրեանի եւ զաւակներուն ու ընտանեկան պարագաներուն, Այրի Տիկին Սառայ Օհանեանի մահուան առթիւ։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆԻ Եկեղեց. Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.— Պ. Պ. Յովսէփ Գալուստեանէ տասը հազար ֆրանք, Կարապետ Յովակիմեանէ հինգ հազար, Փարիզէն Տիկին Հայկանոյշ Ալբոյնարեանէ տասը հազար, Մարսէյլէն Պ. Արիստակէս Պետրոսեանէ հինգ հազար, Տիկին Մառի Պէկեանէ հինգ հարիւր ֆրանք։









### Հ. Մ. Ը. Մ.

Մարսէյլի Հ. Մ. Ը. Միութեան եղանակի պարահանդէսը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 5ին, Շաբաթ երեկոյ, Սալոն տը լ'Ալհամպրայի մէջ։ Կազմակերպութիւններէ կը խնդրուի նկատի առնել սոյն թուականը։

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական հաւաքոյթը այս Չորեքշաբթի գիշեր ժամը 21ին, Քաթէի սրահը։ Ողջերթի թէյասեղան՝ ի պատիւ ծաղրանկարիչ Ալ. Սարուխանի։ Կը հրաւիրուի արուեստասէր հասարակութիւնը։

ԼՈՆՏՈՆԻ մէջ պատրաստուեցաւ Կիպ – րոսի ապագայ Հանրապետութեան վերջ – նական թղթածրարը, որու համաձայն 1960 Փետրուար 19էն Կիպրոս անկախ Հանրապետութիւն մը պիտի ըլլայ :

ԼԻԹՈՒԱՆԻԱՅԻ կաթողիկէ քահանայ մը որ «ապօրէն» կրօնքի դասեր կուտար ե – րախաներուն, ինը ամիս պատիժի դատա– պարտուեցաւ Լիթուանիոյ Գերագոյն դատարանին կողմէ :

Խ · ՄԻՈՒԹԵԱՆ Վարչապետ Խրուշչեւ Կակրէի մէջ (Կովկաս) ընդունեցաւ Չինէի Հանրապետութեան Նախագահ Սքու Թրուէի այցելութիւնը, որուն հետ խոր– հրդակցեցաւ « Խ · Միութեան եւ Չինէի յարաբերութեանց մասին » :

---

ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ · ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ · ՆԱՐԴՈՒՆԻ

Ամսագլխուն լոյս կը տեսնէ Յուլիս – Օգոստոս թիւը (111 – 112), միշտ ճոխ եւ այլազան բովանդակութեամբ .— *Լեարդը առնդութեան մէջ* (Հայ – Բոյժ) .— *Սնունդը կ'ազդէ ախողութեան վրայ* (Տոքթ · Հ · Կուտիս) .— *Թուլթք — մայապըլ* (Փրոֆ · Սապուխանեան) .— *Սննդական թունաւորումներ* (Տոքթ -Գա– յուստեան) .— *Ի՞նչ գիտէք գարեջուրի մասին* (Տոքթ · Աշճեան) .— *Պալար ա – կանջի եւ քիթի մէջ* (Տոքթ ·Սինսինաթի) · — *Մա՞նչ պիտի ծնի թէ աղջիկ* (Բազ – հան) .— *Մասիս լեռը* (Գուլմասեան) . — *Ջրահարութիւն* (Տոքթ · Ազատանի) . — *Խիրդը հրեայ կիներու մօտ* (Տոքթ · Շ · Այվազեան) .— *Արուեստական սերնդա – գործութիւն* (Տոքթ · Պանծալի) .— *Դաշ – տանս կարեցաւ* (Փրոֆ · Ա · Պինէ) .— *Ոսկեայ տասնաբանեայ* (Տոքթ · Հիւմ – պէր) .— *Վարունգ* (Շ · Նարդունի) . — *Արուեստական չնչառութիւն* (խաչուհի) · — *Խնամեցէք ձեր մազերը* .— *Խնդալը դարման* .— *Հաւի եւ հաւկիթի մասին* :

*Պատրաստութեան մէջ է Սեպտեմբեր – Հոկտեմբեր թիւը* :

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵ – ՐԸ .— Տարեկան բաժնեգինը 1500 փրանք, արտասահման՝ 2000 փրանք, (երկու տա– րեկանը միաժամանակ վճարողին համար՝ 3750 փրանք) :

*Դիմել այս հասցէով եւ անունով (գան– ձումները դիւրացնելու համար՝ ուշա – դրութիւն ուղղագրութեան)* . —

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

---

*ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ*

*Հ · Բ · Ը · Միութեան Վալանսի մաս – նաճիւղը կազմակերպած է չքեղ ներկա – յացում մը «Թուղթէ իշխանուհին» եւ ըլ– լարթ* օփէրէթ, *«Մաշտ ի բաթ»ը : Պիտի ներկայացուի դերասան Պ ·Թրաղօշի եւ իր խումբին կողմէ, այս Շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, պետական թատրոնին մէջ* :

*Ապահովեցէք ձեր տոմսերը* :

*Դարձեալ, Հ · Բ · Ը · Միութեան Տիկ– նանց բաժնի կողմէ կազմակերպուած « Մեծ պարահանդէսը» տեղի կ'ունենայ 12 Դեկտեմբեր, Շաբաթ երեկոյ, ժամը 8·30էն սկսեալ,* Օթէլ Քրուա տ'Օրի *մէջ* :

*Սիրով կը հրաւիրուի Վալանսի Հայու– թիւնը* :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### *ԻՍԻԻ ՄԷՋ*

*Կը տօնուի հացկերոյթով մը, այս Կի– րակի ժամը 6ին, Խրիմեան ակումբը* :
*Կը խօսի՝ ընկ Խ · ՄԿՐՏԻՉԵԱՆ*
*Գեղարուեստական բաժին* :
*Մուտք*՝ 1000 *Ֆրանք* :

---

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՆ ՈՒ ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

*Նախաձեռնութեամբ Հ · Յ · Դ · Նիսի Գէորգ Չաւուշ խումբի եւ հովանաւորու– թեամբ Մարսէյլի Հ · Յ · Դ · Շրջ · կոմի – տէի* :

ՆԻՍԻ մէջ Այս Կիրակի, ժամը 15ին :
*Կը տօնուի* թէյասեղանով մը :
Օթէլ Սֆրիպի *չքեղ սրահին մէջ*,
20, Ավընիւ Ժէօրժ Քլէմանսօ, Նիս :
*Կը նախագահէ ընկ ·ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ*
*Կը խօսի Վ · ՄԻՍԹԻՔ* :

*Գեղարուեստական բաժնին իրենց մաս– նակցութիւնը կը բերեն* Օր ·Շաֆէ Գաբ– րիէլեան, *դաշնակով՝ Նիսի Քոնսերվա – թուառէն* Օր · Նիկոա Գասպարեան, *երգ*, Օր · Սալֆի Գէորգեան *եւ փոքրիկն* Արամ Գէորգեան, *արտասանութիւն, նուագ – աքորտէոն՝* Աֆօլանեան *եղբայրներ* :

*Թէյասեղանի ծախքերու մասնակցու – թիւն* 500 *Ֆրանք* :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ .— Հ · Յ · Դ · Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը ճիշդ 21ին, նոյն հաւաքատեղին : Շատ կարեւոր օրակարգ* :

---

## Կ. ՄԵՀԵԱՆԻ

*Երկերու հրատարակիչ յանձնախումբը լոյս ընծայած է Ա · հատորը*

## “ԵՕԹ ՋՐԿԵԱԼՆԵՐ ԵՒ ԵՕԹ ՕԺՏԵԱԼՆԵՐ”

(Իմաստասիրական հէքեաթներ)
*Դիմել հայ գրավաճառներուն* :
*Գաւառի համար՝ Պ · Ա · Բէօսէեանի,* (*Յօթօ Ռէքս, Մարսէյլ*) :
Գին՝ 600 փրանք :



### ՎԱՐՁՈՒ Է

*Ծերութեան եւ յոգնութեան պատճա – ռաւ վարձու է նպարավաճառի խանութ մը (Մարսէյլ), Սէն Ժերոմի մէջ : Նը – պաստաւոր պայմաններով* :

*Փափաքողներուն բնակութեան համար դոհացում կրնայ տրուիլ* :

*Պայմաններու համար դիմել՝*
*ՄԻՀՐԱՆ ՓԱՓԱԶԵԱՆԻ*,
22, Rue des Polytres, St Jérôme, Marseille
*Հեռաձայն՝* 62 85 65



## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Հերթական հաւաքոյթը այս Զորեք – շաբթի գիշեր ժամը 21ին, Քաւէի սրա– հը* : Ողջերթի թէյասեղան՝ ի պատիւ ծաղրանկարիչ Ալ · Սարուխանի : *Կը հը– րաւիրուի արուեստասէր հասարակու – թիւնը* :

## Հ. Մ. Ը. Մ.

*Մարսէյլի Հ · Մ · Ը · Միութեան եղա– նակի պարահանդէսը տեղի պիտի ունե – նայ Դեկտեմբեր 5ին, Շաբաթ երեկոյ,* Սալոն տը լ'Ալհամպրայի *մէջ : Կազմա – կերպութիւններէ կը խնդրուի նկատի առնել սոյն թուականը* :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Վէզիրեան, Կոթողեան, Ֆիշէր ընտանիքները եւ բոլոր ազգականները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին

ԱՅՐԻ ՏԻԿ. ՓԱՌԱՆՁԵՄ ՎԷԶԻՐԵԱՆԻ մահուան առթիւ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)

**ՄԱՐՏ 13 ԻՆ**

### ՓԱՐԻԶԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Փարիզի եւ շրջակայից Հայց. Առաքելական եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան ներկայացուցչական ժողովը Նոյեմբեր 18ի նիստին մէջ ընտրուած ընտրողական յանձնաժողովը, կը տեղեկացնէ որ մօտիկ ապագային նոր ընտրութիւն պիտի կատարուի:

Ընկերակցութեան անդամներէն անոնք որ չեն վճարած իրենց տարեվճարները, հաճին մինչեւ Դեկտեմբեր 7, 1959, փակել իրենց հաշիւները եւ ստանալ համապատասխան ընկալագիր:

Դիւան Ընտր. Յանձնաժողովի
(ԿՆԻՔ)

### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ - ԲՈՅԺ

ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ
խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

—o—

Ամսագլխուն լոյս կը տեսնէ Յուլիս - Օգոստոս թիւը (111 - 112), միշտ նոյն եւ այլազան բովանդակութեամբ.— Լեարդը առանդութեան մէջ (Հայ - Բոյժ).— Անունը կ'ազդէ տեսողութեան վրայ (Տոքթ. Հ. Կուտիս).— Թուրք - մայասըլ (Փրոֆ. Սարուխանեան).— Սննդական թունաւորումներ (Տոքթ. Գալուստեան).— Ի՞նչ գիտէք պարեջուրի մասին (Տոքթ. Աշնեան).— Պալար ականջի եւ քիթի մէջ (Տոքթ. Սինսինաթի).— Մա՞նչ պիտի ծնի թէ աղջիկ (Քաղհան).— Մասիս լեռը (Գուլմաեան).— Ջրահարութիւն (Տոքթ. Ազատեանի).— Խիրդը հրեայ կիներու մօտ (Տոքթ. Շ. Այվազեան).— Արուեստական սերնդագործութիւն (Տոքթ. Պանծալի).— Դաշտանս կտրեցաւ (Փրոֆ. Ա. Պինէ).— Ոսկեայ տասնարանեայ (Տոքթ. Հիւմպէր).— Վարունգ (Շ. Նարդունի).— Արուեստական չնչառութիւն (Խաչուհի).— Խնամեցէք ձեր մազերը.— Խնդալը դարման.— Հաւի եւ հաւկիթի մասին:

Պատրաստութեան մէջ է Սեպտեմբեր - Հոկտեմբեր թիւը:

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ.— Տարեկան բաժնեգինը 1500 փրանք, արտասահման՝ 2000 փրանք, (երկու տարեկանը միաժամանակ վճարողին համար՝ 3750 փրանք):

Դիմել այս հասցէով եւ անունով (դանձումները դիւրացնելու համար՝ ուշադրութիւն ուղղագրութեան).—

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

### ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԻՍԻԻ ՄԷՋ

Կը տօնուի հաւաքոյթով մը, այս Կիրակի ժամը 6ին, Խրիմեան ակումբը:

Կը խօսի՝ ընկ Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Գեղարուեստական բաժին:

Մուտք՝ 1000 փրանք:

### Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՆ ՈՒ ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նիսի Գէորգ Չաւուշ խումբի եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի:

ՆԻՍԻ մէջ Այս Կիրակի, ժամը 15ին:

Կը տօնուի բէյաստղանով մը:

Օթէլ Սֆրիպի շքեղ սրահին մէջ,

20, Ավընիւ Ժէօրժ Քլէմանսօ, Նիս:

Կը նախագահէ ընկ. ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ

Կը խօսի Վ. ՄԻՍԹԻՔ:

Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն Օր. Շաքէ Գաբրիէլեան, դաշնակով՝ Նիսի Քոնսերվաթուարէն Օր. Նիկտա Գասպարեան, երգ, Օր. Սալփի Գէորգեան եւ փոքրիկն Արամ Գէորգեան, արտասանութիւն, նուագաքորտէոն՝ Աճօլանեան եղբայրներ:

Թէյասեղանի ծախքերու մասնակցութիւն 500 փրանք:

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը ճիշդ 21ին, նոյն հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԱՌՆՈՒՎԻԼ.— Այրի Տիկին Արշալոյս Մութաֆէլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հապէշեան իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն Կապոյտ Խաչի տեղական մասնաճիւղին եւ բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ՝

ԳԷՈՐԳ ՄՈՒԹԱՎԷԼԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ:

×

ԼԻՈՆ.— Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է. Տէր եւ Տիկին Ս. Տիւյմէճեանէ հինգ հազար փրանք, Տէր եւ Տիկին Ա. Տիւյմէճեանէ երկու հազար, եւ Այրի Տիկին Ի. Փափազեանէ հինգ հազար փրանք իրենց աղջկան եւ թոռան Սեդայի ծննդեան առթիւ: Տէր եւ Տիկին Ղ. Ղազարեանէ հազար փրանք փոխան ծաղկեպսակի Լեւոն Գազանճեանի մահուան առթիւ: Հազարական փրանքի նուէրներ Տիկին Մակէսեանէ եւ Տիկին Թէրզեանէ:

×

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆԻ Ս. Թադէոս եկեղեց. թաղ. խորհուրդը շնորհակալութեամբ ստացած է, Այրի Տիկին Իսկուհի Մէնթէշեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի՝ Պ. Յակոբ Փափազեանէ հազար փրանք, ի նպաստ աղքատաց, Այրի Տիկին Աղամեանէ եւ զաւակներէն հազար փրանք:



### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Ֆր. Կ. Խաչի «Մանուկներու Օրը» Յունուար 3ին:

Պարահանդէսը Ապրիլ 2ին:

### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Հ. Բ. Ը. Միութեան Վալանսի մասնաճիւղը կազմակերպած է շքեղ ներկայացում մը «Թուղթէ իշխանուհին» եւ զըւարթ օփերէթ, «Մաշտ ի բաթ»ը: Պիտի ներկայացուի դերասան Պ. Թրապօշի եւ իր խումբին կողմէ, այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, պետական թատրոնին մէջ:

Ապահովեցէք ձեր տոմսերը:

Դարձեալ, Հ. Բ. Ը. Միութեան Տիկնանց բաժնի կողմէ կազմակերպուած «Մեծ պարահանդէսը» տեղի կ'ունենայ 12 Դեկտեմբեր, Շաբաթ երեկոյ, ժամը 8.30էն սկսեալ, Օթէլ Քրաւն տ'Օրի մէջ:

Սիրով կը հրաւիրուի Վալանսի Հայութիւնը:

### ԱԼՖՈՐՎԻԼ

Անհատ մը կը ծախէ երեք պատ սենեակ, երկու հարիւր քառակուսի մեթր հող, պօքսի կարելիութիւն եւ արհեստանոցի: Այցելութիւն՝ ժամը 14էն 16:

Յպիս, ՐԻԻ ՌԱՍՓԱՅ:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ՀԱՅԱԾԽՍ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ Ս. ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի ժամը 5ին, հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ՝ ԳԵՐ. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ՓԱՐԹԱՄԵԱՆ (Պէյրութի կղերէն) Աժիէռ Սէնթ Ժըրըվիէվ հաստատութեան մատրան մէջ, 19 Ռիւ տը լա Սթասիօն:

Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալու սոյն հոգեպարար արարողութեան:

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղեցւոյ Թաղական խորհուրդը կը յայտարարէ թէ, այս Կիրակի օր, Եկեղեցւոյս անուան տօնախմբութեան առթիւ, այս տարի բացառաբար ըլլալով նոյն օրը հանդիսաւոր Ս. պատարագ եւ մատաղի օրհնութիւն եւ ընկալեալ սովորութեան յաւարտ Ս. եկեղեցւոյ փակին մէջ մատաղի բաշխում տեղի պիտի ունենան:

Մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի թեմիս նախկին առաջնորդ ՊԱԼԱՔԵԱՆ սրբազանի հոգւոյն եւ Ս. Եկեղեց. կնքամօր Օր. Նունիկ Տէր Ղեւոնդեանի հոգւոյն եւ համայն թաղիս եւ շրջակայքի ժողովուրդեան դերդաստանին ննջեցելոց հոգւոյն:

Արարողութիւնները կը կատարուի թաղիս եկեղեցւոյս երգչախումբի կողմէ, ընկերակցութեամբ երգեհոնի եւ ղեկավարութեամբ Օր. Սիւզան Պօյաճեանի:

ՓՈՐԹՈՒԿԱԼԻ ընդդիմադիր շարժումի պարագլուխ զօրավար Տելկատօ Լոնտոնի մէջ յայտարարեց թէ այսօր իր երկրին մէջ գինեալ յեղափոխութիւն մը շատ աւելի հաւանական է, քան հինգ կամ տասը տարի առաջ :

ԱՄԵՐԻԿԱՅԻ Երկիրներու Կազմակերպութեան մշակութային խորհուրդի երրորդ համագումարին մէջ Փորթօ–Ռիքոյի կառավարիչ Մարէն յայտարարեց թէ Եւրոպայի եղած Մարշալի ծրագրին նման տնտեսական օգնութեան ծրագիր մը պէտք է ըլլայ Հարաւային Ամերիկայի երկիրներուն համար :

ԱՆԳԼԻՈՅ Արտաքին նախարարութիւնը հաստատեց այն լուրը, որու համաձայն Սէուտական Արաբիոյ եւ Լոնտոնի միջեւ բանակցութիւններ սկսած են դիւանագիտական յարաբերութեանց վերահաստատման համար : Երկու երկիրներու ներկայացուցիչները իրենց խորհրդակցութիւնները կ'ունենան Նիւ Եորքի մէջ :

ՆԱԽԱՐԱՐԱՑ ԽՈՐՀՈՒՐԴԻ ժողովին մէջ Նախագահ տը Կոլ իր տպաւորութիւններ յայտնեց Ալճասի մէջ կատարած շրջապտոյտի մասին, աւելցնելով թէ շատ գոհ մնացած էր մասնաւորապէս տնտեսական մարզի մէջ արձանագրուած յաջողութիւններով : Ալժերիոյ հարցը խնդրոյ առարկայ չդարձաւ, իսկ Ելմտական նախարար Փինէ տեղեկութիւններ տուաւ Վիէթնամ կատարած իր ճամբորդութեան մասին : Քուվ տը Միւրվիլ ներկայացուց քաղաքական ներկայ կացութիւնը՝ միջազգային ճակատի վրայ :

ԼՈՆՏՈՆԻ մէջ կոկէնի մէկ գործը՝ «Նամակ կը սպասեմ» ծախուեցաւ 130·000 սթերլինի (180 միլիոն ֆրանք), իսկ Սեզանի «Կապոյտ շապիկով գիւղացի»ն՝ 145 հազար սթերլինի :

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը ճիշդ 21ին, նոյն հաւաքատեղին : Շատ կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—

Նիկոլ Դուման խումբը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 16ին :

Գէորգ Չաւուշ խումբը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 14ին :

Քրիստափոր ենթակոմիտէն 5 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին :

Հայաստան ենթակոմիտէն 5 Դեկտ., Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին :

Մուրատ խումբը 6 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին :

Արամ խումբը 6 Դեկտ. Կիրակի առաւօտ, ժամը 10ին :

Թաթուլ խումբը 6 Դեկտ. Կիրակի առաւօտ ժամը 10ին :

(Շար.)

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻՆ

Ֆ. Կապ. Խաչի Անիէռ–Պուա–Քոլոմպի մասնաճիւղը Տիկին Փառանձեմ Վէզիրեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հինգ հազար ֆր. կը նուիրէ Կապոյտ Խաչի օգնութեան կայանին : (Ստանալ «Յառաջ»էն) :

Նոյն առթիւ Տէր եւ Տիկին Զարեհ Ղարիպեան երկու հազար ֆր. կը նուիրէ Կապոյտ Խաչի օգնութեան կայանին : (Ստանալ «Յառաջ»էն) :

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ՒՍԻՒ ՄԷՋ

Կը տօնուի հացկերոյթով մը, այս Կիրակի ժամը 6ին, Խրիմեան ակումբը :

Կը խօսի՝ ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Գեղարուեստական բաժին :

Մուտք՝ 1000 ֆրանք :

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՆ ՈՒ ՔՐԻՍՏԱՓՈՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆԻ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նիսի Գէորգ Չաւուշ խումբի եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի :

ՆԻՍԻ մէջ Այս Կիրակի, ժամը 15ին :

Կը տօնուի թէյասեղանով մը :

Օթէլ Աֆրիքի շքեղ սրահին մէջ,

20, Ավընիւ Ժէօրժ Քլէմանսօ, Նիս :

Կը նախագահէ ընկ. ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ

Կը խօսի Վ. ՄԻՍԹԻՔ :

Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն Օր. Շաքէ Գաբրիէլեան, դաշնակով՝ Նիսի Քոնսերվաթուարէն Օր. Նիկտա Գասպարեան, երգ, Օր. Սալփի Գէորգեան եւ փոքրիկն Արամ Գէորգեան, արտասանութիւն, նուագ–աքորտէոն՝ Աճօլանեան եղբայրներ :

Թէյասեղանի ծախքերու մասնակցութիւն 500 ֆրանք :

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

ՓԱՐԻԶ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք, ժամը չորսին, Քաֆէ լը Րէժանի մէջ : Խիստ կարեւոր օրակարգ : Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է :

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Լիոնի եւ շրջանի Հայութեան կը ծանուցանենք որ այս Կիրակի հանդիսաւոր Ս. պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ Եւրոպայի Կաթ. պատուիրակ Տ. Սերովբէ Եպիսկ. Մանուկեան :

Ուստի հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալու այս արարողութեան :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »







### ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Հ. Բ. Ը. Միութեան Վալանսի մասնաճիւղը կազմակերպած է շքեղ ներկայացում մը «Թուղթէ իշխանուհին» եւ զուարթ օփէրէթ, «Մաշտ ի բաթ»ը : Պիտի ներկայացուի դերասան Պ. Թրապօշի եւ իր խումբին կողմէ, այս Շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, պետական թատրոնին մէջ :

Ապահովեցէք ձեր տոմսերը :

Դարձեալ, Հ. Բ. Ը. Միութեան Տիկնանց բաժնի կողմէ կազմակերպուած «Մեծ պարահանդէսը» տեղի կ'ունենայ 12 Դեկտեմբեր, Շաբաթ երեկոյ, ժամը 8·30էն սկսեալ, Օթէլ Քրուա տ'Օրի մէջ :

Սիրով կը հրաւիրուի Վալանսի Հայութիւնը :

### ՀԱՅԱՍՏԱՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ Ս. ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի ժամը 5ին, հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ եւ քարոզէ՝ ԳԵՐ. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ՓԱՐԹԱՄԵԱՆ (Պէյրութի կղերէն) Անիէռ Սէնթ ժընը–վիէվ հաստատութեան մատրան մէջ, 19 Ռիւ տը լա Սթասիոն :

Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ներկայ ըլլալու սոյն հոգեպարար արարողութեան :

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս Եկեղեցւոյ Թաղական խորհուրդը կը յայտարարէ թէ, այս Կիրակի օր, Եկեղեցւոյս անուան տօնախմբութեան առթիւ, այս տարի բացառաբար ըլլալով նոյն օրը հանդիսաւոր Ս. պատարագ եւ մատաղի օրհնութիւն եւ ընկալեաց սովորութեան յաւարտ Ս. եկեղեցւոյ փակին մէջ մատաղի բաշխում տեղի պիտի ունենան :

Մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Թեմիս նախկին առաջնորդ ՊԱԼԱՔԵԱՆ սրբազանի հոգւոյն եւ Ս. Եկեղեց. կնքամօր Օր. Նունիկ Տէր Ղեւոնդեանի հոգւոյն եւ համայն Թաղիս եւ շրջակայքի ժողովուրդեան գերդաստանին ննջեցելոց հոգւոյն :

Արարողութիւնները կը կատարուի Թաղիս եկեղեցւոյս երգչախումբի կողմէ, ընկերակցութեամբ երգեհոնի եւ ղեկավարութեամբ Օր. Սիւզան Պօյաճեանի :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Կիւլէնիա Պետրոս Զպուքճեան իր հօր Սարգիս Աշճեանի կսկծալի մահուան առթիւ (Պէյրութ) կը նուիրէ հինգ հազար ֆրանք Մշակոյթի Տան Գ. Բալայեան սրահին, հինգ հազար ֆրանք Կապ. Խաչի Պէլֆօնթէնի կայանին :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Թորգոմ Նալպանտեան ընտանիքը կը նուիրէ՝ չորս հազար ֆրանք Ֆրանսահայ Կապ. Խաչի օգափոխութեան կայանին, հազար ֆրանք «Յառաջ»ի, իրենց քրոջ ողբացեալ Վիքթորիա Նալպանտեանի աճիւններուն փոխադրութեան առթիւ՝ ընտանեկան դամբարանին մէջ: (Ստանալ «Յառաջ»էն) :

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Արմենուհի Քէնտիրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Գրիգոր Քէնտիրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Սարգիս Քէնտիրեան եւ զաւակները (Պոլիս), Այրի Տիկին Ծաղիկ Քէնտիրեան եւ դուստրը, Տէր եւ Տիկին Գառնիկ Քէնտիրեան եւ զաւակները (Պոլիս), Պ. Մինաս Քէնտիրեան եւ դուստրը, Տէր եւ Տիկին Լեւոն Քէնտիրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Խաչիկ Կիւլեան (Մ. Նահանգներ), Տէր եւ Տիկին Ղեւոնդ Կիւլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ղազար Կիւլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Վահան Կիւլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Ս. Կիւլեան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Խորէն Կիւլեան եւ զաւակները (Փարիզ), Տէր եւ Տիկին Յովհաննէս Տէր-Պետրոսեան եւ զաւակները (Հայաստան), Տէր եւ Տիկին Յարութիւն Դաւիթեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Թադէոս Ադամեան եւ զաւակները, Պ. Արիստակէս Տէր-Պետրոսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Գէորգ Կակոյեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կորի, Տէր եւ Տիկին Արամ Արմաղանեան եւ զաւակները սրտի խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր, հօրեղբօր, տաքրոջ, եղբօրորդւոյն, քեռորդիին, հօրաքրոջորդւոյն, քեռայրին, սանահօր, ազգականին եւ բարեկամին՝

ՈՍԿԱՆ ՔԷՆՏԻՐԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ 16 Նոյեմբերին սրտի կաթուածով, (56 տարեկան):

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ Մատրան մէջ, 17 Նոյեմբերին, եւ մարմինը ամփոփուեցաւ Սէն Լուիի գերեզմանատունը: Սգակիրները իրենց ջերմ շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր յուղարկաւորներուն եւ ամէն անոնց որ անձամբ, գրաւոր իրենց վշտակցութիւնները յայտնեցին եւ փոխան ծաղկեպսակի նուէրներով յարգեցին հանգուցեալին յիշատակը:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Իթալիի մասնաճիւղը կուգայ իր ցաւակցութիւնները յայտնել Տէր եւ Տիկին Ֆէրմանեանի իրենց եղբօր եւ աներձագին Տրդատ Պալեանի տխուր մահուան առթիւ:

×

Մարսէյլի Ամասիոյ Հայր. Միութեան վարչութիւնը, յանուն բոլոր հայրենակիցներուն, խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Մաքրուհի Տէօքմէճեանի եւ զաւակներուն եւ բոլոր ընտանեկան պարագաներուն, անակնկալ մահուան առթիւ հայրենակից Պ. Սարգիս Տէօքմէճեանի :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅԵՐՈՒՆ

Պատրաստուեցէք Ամասիոյ Երիտասարդաց տարեկան մեծ պարահանդէսին :

Դեկտեմբեր 12, Շաբաթ գիշեր մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահներուն մէջ, 340 Պուլվ. Շավ :



## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Շաւարշ Միսաքեան» խումբի վարչութիւնը, կազմակերպած է դասախօսութիւն մը, Չորեքշաբթի 2 Դեկտեմբեր ժամը 21ին, «Ահարոնեան» ակումբը :

Դասախօս՝ ընկ. Ա. ՔԷՕՍԷԵԱՆ :

Կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—

Քրիստափոր ենթակոմիտէն 5 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Հայաստան ենթակոմիտէն 5 Դեկտ., Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին :

Մուրատ խումբը 6 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Արամ խումբը 6 Դեկտ. Կիրակի առտու, ժամը 10ին:

Թաթուլ խումբը 6 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Ակնունի ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Համազասպ ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Վռամեան ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին :

Ընկ. Կարօ խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մանուկեան Եպիսկ.ի առաջնորդութեամբ եւ Եկեղեցաշէն Յանձնախումբի ատենապետ Պ. Կարպիս Ճնկըրըեան ընկերակցութեամբ առաջին այցելութիւնը ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան նուիրահաւաքման, արդէն իսկ քաջալերական եւ յուսադրիչ է.—

Շնորհակալութեամբ ստացած է Լիոնի եկեղեցաշէն յանձնախումբը հետեւեալ գումարները.— Փարիզէն Պ. Ապրօ Խանճեանէ հարիւր հազար ֆրանք, Լիոնէն Պ. Յարութիւն Յովհաննէսեանէ հարիւր հազար, Լիոնէն Պ. Նազար Ուզունեանէ յիսուն հազար, Տիկին Սարայտարեանէ 40.000, Փարիզէն Պ. Վահէ Ֆրէնկեանէ քսան հազար :

×

Այրի Տիկին Նազելի Թէճիրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Սուքիաս Թէճիրեան եւ զաւակները (Ամերիկա), Տէր եւ Տիկին Ոսկան Թէճիրեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արսէն Թէճիրեան եւ զաւակները, շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով կամ նուիրատուութեամբ ցաւակից եղան իրենց սուգին, իրենց ամուսնոյն, հօր եւ եղբօր՝

ՕՀԱՆՆԷՍ ԹԷՃԻՐԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ :

×

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները : Պ. Եդուարդ Խըտըրեան հազար ֆրանք: Պ. Կարապետեան հազար ֆրանք, Օր. Փափազեան հազար ֆրանք :

## ԱՃՈՒՐԴՈՎ ՊԻՏԻ ԾԱԽՈՒԻ

8 Դեկտեմբեր 1959ին, երեքշաբթի, ժամը 10ին, Մարսէյլի նոտարներու սենեակին մէջ, 36 Րիւ Քարատի, աճուրդով պիտի ծախուի, Մարսէյլի Սէն Ժիւսթ թաղամասին մէջ, Պուլվար Ալֆա Մուսի անկիւնը, Րիւ պրէմօն 6ա թիւին տակ գտնուող, 88 քառակուսի մեթր տարածութեամբ եւ բնակութեան ու արհեստագործութեան յատուկ գետնայարկ շէնք մը, զոր բարեյիշատակ տիկին Լուսի Արապաճեան կտակած է Հ. Բ. Ը. Միութեան :

Աճուրդը պիտի բացուի մէկ միլիոն ֆրանքի գինով :

Այժմ շէնքին մէջ կը բնակի ու կը գործէ հայ դերձակ մը, առանց վարձակալութեան իրաւունքի եւ պայմանագրի, պարագայ մը զոր պարտի գիտնալ ապագայ գնորդը, որուն պիտի իյնայ պահել կամ հեռացնել շէնքին մէջ գտնուող յիշեալ անձը:

Ամէն տեղեկութեան համար դիմել Նոտար մեթր ՏԷՅՏԻԷ, 62, Րիւ Մօնկրան, Մարսէյլ, հեռաձայն 33-10-83 :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները.—

Փոքրիկն Սեդա Տիւյմէճեանի ծննդեան ուրախ առթիւ, իր մեծ հայրը եւ մեծ մայրը Տէր եւ Տիկին Աւետիս Տիւյմէճեանէ հինգ հազար ֆրանք, իր մեծ մայրը Այրի Տիկին Իսկուհի Փափազեանէ հինգ հազար, իր ծնողքը Տէր եւ Տիկին Ստեփան Տիւմէճեանէ հինգ հազար :

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Անիէռ - Պուա Քոլոմպի Սօսէ-Սերոբ խումբին կողմէ, Կիրակի Դեկտեմբեր 6, ժամը 15ին, Քլոշէթի սրահը, 149պիս, Ավընիւ տ'Արժանթէօյ :

Ճոխ յայտագիր :

Կը հրաւիրուին ծնողքները :

Մուտքը ազատ է :